առեւտրականներուն, փաստաբաններուն, բժիշկներուն եւ նոյն իսկ վարձու աշխատաւորներուն դէմ:

Միւս կողմէ, դիմում եղած է ելմտական նախարարութեան որպէսզի վիճակախաղ մը կազմակերպուի ի նպաստ այս փախստականներուն: Նախարարը պատասխանած է թէ ներկայ պարագաներուն մէջ, երբ ազգային փոխառութիւն մը եւ վիճակախաղ մը կազմակերպուած են, չեն կրնար ընթացք տալ այդ խնդրանքին:

## ՍՊԱՆԻՈՑ ԲՈՐՈՏՆԵՐՆ ԱԼ ԳԼՈՒԽ ՎԵՐՑՈՒՑԻՆ

Անցեալ օր գրած էինք թէ ռումանական քաղաքի մը բորոտները ըմբոստացած են, բարելաւում պահանջելով:

Մատրիտէն կը հեռագրեն թէ Ալիքանթէի մօտ հաստատուած բորոտանոցի մը պատսպարեալներն ալ գլուխ վերցուցած են: Ասոնք սէնտիկա կազմած ըլլալով, կը դանդատին թէ միջնադարեան կարգուսարքի մը ենթարկուած են: Քննութիւն բացուած է այս խլրտումին առթիւ, որովհետեւ բորոտները մասնաւորապէս բազմաթիւ են Սպանիոյ արեւելեան գաւառներուն մէջ:

## ԱՅՐԻՆ ԻՐԱՒՈՒՆՔ ՈՒՆԻ՞ ԻՆՔԶԻՆՔԸ ՎԱՌԵԼՈՒ

Հնդիկները սովորութիւն ունէին մեռած ամուսիններու խարոյկին վրայ ողջ ողջ վառելու անոնց այրիները: Անգլ. իշխանութիւնը ջնջեց այս վայրագ սովորութիւնը: Բայց, հնդիկ այրիները կը շարունակեն ինքնաբերաբար անձնասպան ըլլալ խարոյկի վրայ, երբ կը մեռնի իրենց ամուսինը: Հնդկաստանի սահմանադրական բարենորոգումներու յանձնաժողովին մէջ, ուղղափառ Հնդիկ մը պաշտպանեց այս իրաւունքը, յայտարարելով թէ կամաւոր զոհաբերութիւնը ապացոյց է վսեմ խօսքի մը:

— «Եթէ այրի մը կ'որոշէ ինքզինքը ողջ ողջ այրել իր ամուսինը մեռած ատեն, ինծի համար աստուածութեան իրական նշան մըն է այդ»:

## ԿՐԸՆՈՊԼԻ ԴԷՊՔԸ ԵՒ «ԻՒՄԱՆԻԹԷ»Ն

«Իւմանիթէ», Ֆրանսայի համայնավար կուսակցութեան պաշտօնաթերթը, իրար անցած է երկու օրէ ի վեր, Կրընոպլի նոր դէպքին առթիւ: Կ'ուզէ ապացուցանել թէ՝ Ղազարոս Մարգարեան անիրաւաբար ձերբակալուած է, թէ «դաշնակ» դաւադրութիւն մըն է մահափորձի պատմութիւնը եւն.:

Քանի մը տող՝ գաղափար մը տալու համար ժուռէսի անարժան ժառանգորդներուն հոգեբանութեան եւ մանաւանդ ... գաղափարականութեան վրայ.

— «Պէտք է Ֆրանսայէն վտարել դաշնակները որոնք կը վխտան Կրընոպլի շրջանին մէջ. պրոլետարիատը թոյլ չպիտի տայ որ անոնք շարունակեն իրենց փաշական ռազմախաղերը եւ հակախորհրդային դաւերը»: (4 օգոստոս):

— «Հայ փաշականները աշխատաւորներուն համար ճշմարիտ վտանգ մը կը կազմեն Կրընոպլի շրջանին մէջ: Անոնց կեդրոնին մէջ զէնքեր կան եւ թերեւս այնտեղ պիտի գտնուի ատրճանակ մը այն գնդակովներով որ վիրաւորեցին Ասլանեանը»: (5 օգոստ.):

Ուրեմն, Եղ. Ասլանեանը յարձակման ենթարկուած է ... իր ընկերներուն կողմէ:

Իբրեւ պերճախօս երեւոյթ՝ արձանագրելով «Իւմանիթէ»ի այս իրարանցումը, կը սպասենք դատական քննութեան:

Այս առթիւ, համայնավար թերթը պարտք սեպած է «փաշականներու օրկան» կոչել «Յառաջ»ը, ինչպէս «հակախորհրդային հայ փաշականներ» կ'անուանէ Դաշնակցականները:

Յ. Հ. Դ.

## Փարիզ եւ շրջակաները

ՊԻԼՎԻԼԻ «ՌՈՍՏՈՄ» Ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը այս Երեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 231 Fbg. du Temple.











Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)

օր: Ժամը 7·30ին զարհուրելի որոտում մը լսուեցաւ եւ կայծակ ինկաւ մարզադաշտին վրայ: Գրեթէ բոլոր տղաքը եւ ուսուցիչները գետին փռուեցան: Շատերը ոտքի ելան բռնած՝ իրենց գլուխները եւ անասելի սարսափի մը մատնուած: 19 հոգի գետին փռուած կը մնային, երկուքը մեռած (19 եւ 16 տարեկան), իսկ 17ը ծանր ցնցումներու մատնուած:

**« ԻԳՏԻՐ »Ը ՀԱՅԵՐԷ՞Ն Է**

Իգտիրէն « Սոն Փօսթա »յի կը հաղորդեն թէ Իգտիր հայերէն բառ մըն է եւ կը նշանակէ « դրախտ »: Քաղաքապետութիւնը ընկերի կառավարութենէն խնդրած է «Աղըր»ի (Արարատ) փոխել այդ հայերէն անունը:

---

Յ. Հ. Դ.

## Փարիզ եւ արուարձաններ

ՇԱՎԻԼԻ «Արղութեան» խումբի ժողովը վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 9ին սովորական հաւաքատեղին: Կը խնդրուի 1932 եւ 1933ի անդամատետրերը միասին բերել:

**Գաւառ**

ՍԷՆ-ԺԷՐՈՄԻ (Մարսէյլ) Վրէժ խումբը ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին:

---

## Դ Ա Շ Տ Ա Հ Ա Ն Դ Է Ս

կազմակերպուած՝ ՊԷԼՎԻԼԻ «ՌՈՍՏՈՄ» ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ
20 ՕԳՈՍՏՈՍ ԿԻՐԱԿԻ ՕՐ ԱՌԱՒՕՏԷՆ ՄԻՆՉԵՒ ԵՐԻԿՈՅ
ՔԼԱՄԱՌԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ «ՊԱՂ ԱՂԲԻՒՐ»ԻՆ ՄՕՏ
Կը նախագահէ՝ ընկ. ԵՐՈՒԱՆԴ ՃԱՆԿԷՕԶԵԱՆ
բանախօսութիւն, երգ, պար, նուագ եւյլն.: դիւրամատչելի պիւֆէ:

---

## Դաշտահանդէս Վիէնի մէջ

**ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՒ**
կազմակերպուած՝ Հ. Յ. Դ. ՎԻԷՆԻ ԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ
ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԱՌԱՒՕՏԵԱՆ ԺԱՄԸ 8էն ԻՐԻԿՈՒԱՆ ԺԱՄԸ 8
(Զորս ճանապարհին՝ Ջրաղացքի-գետակի եզերք):
Կը նախագահէ՝ ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ
Կը խօսի՝ ընկ. Ն. ԽԱՉԻԿԵԱՆ
գեղարուեստական ճոխ բաժին: դիւրամատչելի պիւֆէ:
Սիրով կը հրաւիրուի Վիէնի հայ հասարակութիւնը:

---

## Ընտանեկան պարահանդէս

կազմակերպուած՝ Հ. Յ. Դ. ՏԷՍԻՆԻ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԳՐԱԴԱՐԱՆԻ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ
վաղը, երկուշաբթի երեկոյ ժամը 8էն մինչեւ առաւօտեան 2
Հ. Յ. Դ. «ԺՈՂՈՎՐԴԱՅԻՆ ՏԱՆ» մէջ
Յաջորդ օրը Երեքշաբթի ՇՔԵՂ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ տեղի կ'ունենայ Տէսինի «ՊԱՂ ԱՂԲԻՒՐ»ին մօտ:
գեղարուեստական բաժին: ճոխ պիւֆէ:

---

## Ֆր. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին Տարեկան դաշտահանդէսը

ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԱՌԱՒՕՏԷՆ ՄԻՆՉԵՒ ԻՐԻԿՈՒՆ
**St. CLOUD**Ի ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ
Նախորդ տարուան բացատանը (Passage à Niveau)
ընդհանուր սեղան, սեղանապետութեամբ՝ **Պ. ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆԻ**
ճոխ պիւֆէ: դիւրամատչելի պիւֆէ:
Աստուածածնայ տօնի առթիւ տեղի պիտի ունենայ «վիճակ»:
Փափաքողները կրնան ճաշը միասին բերել
Հաղորդակցութեան միջոցներ.— 2, եւ 25 թիւ հանրակառքերը, St. Lazareէն շոգեկառք եւ շոգենաւ:
Անձրեւի պարագային դաշտահանդէսը կը յետաձգուի:

---

# «ՎԷՄ»

**ԵՐԿԱՄՍԵԱՅ ՀԱՆԴԷՍ ՄՇԱԿՈՅԹԻ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ**
Խմբագիր՝ Ս. ՎՐԱՑԵԱՆ

Առաջին թիւը յանձնուած է տպագրութեան եւ լոյս կը տեսնէ սեպտեմբերին:

Առաջին թիւին մէջ նիւթեր ունին՝ Ա. ԱԲԵՂԵԱՆ, Ա. ԱՆՏՈՆԵԱՆ, Ռ. ԲԵՐԲԵՐԵԱՆ, Ա. ԳԻՒԼԽԱՆՏԱՆԵԱՆ, Յ. ՋԱՐԵԱՆ, Ե. ԹԱԴԷՈՍԵԱՆ, ԻՐԱԶԵԿ, Ա. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ, Ա. ՋԱՄԱԼԵԱՆ, Վ. ՄԻՆԱԽՈՐԵԱՆ, Շ. ՆԱՐԴՈՒՆԻ, Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ, Կ. ՍԱՍՈՒՆԻ, Վ. ՓԱՓԱԶԵԱՆ եւ ուրիշներ:

Առաջին թիւէն պիտի սկսի հրատարակուիլ Վ. Արք. Մանկունիի « Գէորգ Դ. եւ իր ժամանակը » ընդարձակ պատմական գործը:

Այլեւայլ վաւերագրեր, տեսութիւններ, գրախօսականներ, նկարներ:

Վէմի մէջ լոյս պիտի տեսնեն նաեւ Դրօի յուշերը, Հայաստանի խորհրդի եւ պարլամենտի արձանագրութիւնները:

Վէմին խոստացած են աշխատակցիլ, ի միջի այլոց.— ՊՐՕՖ. ԱԴՈՆՑ, Ա. ԱԼՊՕՅԱՃԵԱՆ, ՀԱՄԱՍՏԵՂ, Շ. ՄԻՍԱՔԵԱՆ, ՆԵՐՍԷՍ արք. ՄԵԼԻՔ-ԹԱՆԳԵԱՆ, ՍԱՄՍՈՆ, ՍԵՊՈՒՀ, Ե. Ճ. ՍԻՐՈՒՆԻ, Յ. ՕՇԱԿԱՆ եւ ուրիշներ:

Առաջին թիւէն իսկ « Վէմ »ի առաքումը ապահովելու համար անհրաժեշտ է բաժանորդագրուիլ այժմէն՝ բաժնեգինը ուղարկելով կանխիկ: Բաժնեգինը չվճարուած ապսպրանքները նկատի չպիտի առնուին:

*Բաժանորդագրութեան պայմանները.—*

| | | |
|---|---|---|
| Ամերիկա, Բրիտ. կայսրութիւն, Եգիպտոս, Իտալիա՝ տարեկան | | 65 ֆրանք |
| Ֆրանսա եւ այլ երկիրներ | » | 50 ֆրանք |
| Ռումանիա, Պուլկարիա, Յունաստան, Սուրիա, Պարսկաստան | » | 40 ֆրանք |

*Բաժանորդագրութեան համար դիմել՝*
**L. Kévonian**ի **17 Rue Damesme, Paris (13)**

---



---

**ԱԶԴ**

*Մարսէյլի Ս. Թարգմանչաց Մայր-Եկեղեցիի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ՝ այսօր, Կիրակի Ս. Աստուածածնի Տօնը եւ Խաղողօրհնէքը պիտի կատարուին հանդիսաւոր կերպով եւ այս առիթով պիտի պատարագէ ու քարոզէ Առաջն. Տ. Գրիգորիս Եպսկ. Պալաքեան:* (կնիք)

---

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*ՓԱՐԻԶԻ Տարօն - Տուրուբերան Հայրենակցական Միութեան ընդհ. ժողովը այսօր Կիրակի կէս օրէ յետոյ Պէլվիլի ծանօթ սրճարանը: Օրակարգ.— Հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն: Կը խնդրուի անդամ եւ ոչ-անդամ բոլոր հայրենակիցներէ ներկայ ըլլալ այս խիստ կարեւոր ժողովին:*

---



---

Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)

---

### Զբօսանաւ մը կրակ առաւ

Ուրբաթ իրիկուան դէմ, Քանի մէջ (Միջերկրականի վրայ), նախարարական խորհրդական Փաթընոթրի զբօսանաւը կրակ առաւ, երբ կը վերադառնար պտոյտէ մը: Քանի մը վայրկեանէն հրդեհը այնքան ծաւալեցաւ որ, յոյս չմնաց փրկելու: Խորհրդականը եւ իր 15 հիւրերը ծով նետուելով, լողացին եւ ցամաք ելան: Լողալ չէր գիտեր միայն Փարիզի անգլիական դեսպանատան քարտուղարին կինը, որ միւսներուն թեւերուն վրայ առաջնորդուեցաւ ծովափ:

Հրդեհը ծագած էր ժամը 1·30ին: Քսան վայրկեան վերջը զբօսանաւը կ'ընկղմէր:

### ԴԱՍ ՄԸ՝ ՋԱՓԸ ԱՆՑՆՈՂՆԵՐՈՒՆ

Թուլոնի շրջանին մէջ, Սանարիի մէջ սրճարանատէր մը «բնապաշտական» պարահանդէս մը սարքած էր ուրբաթ գիշեր: Մասնակցողները ճիշդ ժամանակին ծովափնեկան այնքանբաց հագուստով մը, որ ժողովուրդը գայթակղեցաւ. սրճարան խուժեց եւ փախուստի մատնեց պարողները: Այս առթիւ, ընդհարումներ ալ պատահեցան եւ սրճարանը վնասներ կրեց: Շրջանին ոստիկանները հասնելով հազիւ կրցան վերահաստատել բարեկարգութիւնը:

⁂ Վերջերս Անգլիոյ մէջ ալ այսպիսի գայթակղութիւն մը պատահեցաւ, երբ աղջիկներ եւ այրեր փողոցներէն կ'անցնէին լողալու հագուստով:

Այս առթիւ հարցում ուղղուած ըլլալով Քէնթըրպըրիի աւագերէցին, գերապատիւը պատասխանեց թէ անյարմարութիւն չի տեսներ որ միայն ծովափի յատուկ «փիժամա» հագած կիներ այցելեն մայր եկեղեցին: «Միայն թէ, շատ ուշադրութիւն չգրաւեն: Ես անպատշաճ չեմ գտներ «փիժամա»ն, թէեւ երբեք սիրուն չէ»:




Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)

